Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 8 ԱՊՐԻԼ 1951

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Կ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։
Հեռախոս՝ 2—52—78։

# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ

(Նյութեր զեկուցումների և զրույցների համար)

*Մայիսի մեկը ամբողջ աշխարհի աշխատավորների միջազգային տրադիցիոն տոնի օրն է։ Ամեն տարի այդ օրը բանվոր դասակարգը, միջազգային պրոլետարիատը, աշխատավոր մասսաները նորից ու նորից են ցուցաբերում իրենց միասնությունը և պատրաստակամությունը՝ պայքարելու հանուն աշխատավոր մարդկության ազատագրման կապիտալիզմի լծից, հանուն կոմունիզմի լիակատար հաղթանակի։*

*Դեռ անցյալ դարում բոլոր երկրների բանվորները որոշեցին ամեն տարի տոնել Մայիսի մեկը։ Այդ որոշումն ընդունվեց 1889 թվականին բոլոր երկրների սոցիալիստների*

Փարիզի կոնգրեսում։ «...Հատկապես այսօր, —ասում է ընկեր Ստալինը,— Մայիսի մեկի օրը, երբ բնությունն արթնանում է ձմեռային քնից, անտառներն ու լեռները ծածկվում են կանաչով, դաշտերն ու մարգագետինները զարդարվում են ծաղիկներով, արեգակն սկսում է ավելի ջերմորեն տաքացնել, օդի մեջ զգացվում է վերակենդանացման բերկրանքը, իսկ բնությունը անձնատուր է լինում պարի ու ցնծության,— նրանք որոշեցին հատկապես այսօր հայտարարել ամբողջ աշխարհին բարձրաձայն ու բացահայտորեն, որ բանվորները մարդկությանը բերում են գարուն և ազատագրություն կապիտալիզմի կապանքներից, որ բանվորները կոչված են նորոգելու աշխարհը ազատության ու սոցիալիզմի հիմունքով»։

Մայիսի մեկը ամենուրեք անցկացվեց 1890 թվականին։ Մինչև Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիան Մայիսի մեկը Ռուսաստանում տոնվում էր բոլշևիկների ղեկավարությամբ և մայիսմեկյան ցույցերը վեր էին ածվում պրոլետարիատի հզոր ելույթների՝ ընդդեմ ցարիզմի ու կապիտալիստների։

Մայիսի մեկը Անդրկովկասում առաջին



անգամ բացահայտ կերպով տոնվել է սրանից 50 տարի առաջ, 1901 թվականին՝ ընկեր Ստալինի ղեկավարությամբ։ «1901 թվականի ապրիլի 22-ին,— ասված է Ի. Վ. Ստալինի համառոտ կենսագրության մեջ,— Թիֆլիսի կենտրոնում կազմակերպվում է մայիսմեկյան ցույց։ Ստալինը ցույցի կազմակերպիչն ու ղեկավարն էր»։

Լենինյան «Իսկրան» 1901 թվականի մայիսմեկյան այդ ցույցը գնահատել է որպես ամբողջ Կովկասի համար պատմականորեն նշանակալից մի իրադարձություն։

Ապրիլի 22-ին Թիֆլիսում տեղի ունեցած իրադարձությունը, ինչպես գրել է «Իսկրան», պատմականորեն նշանակալից է ամբողջ Կովկասի համար։ Այդ օրից Կովկասում սկսվում է բացահայտ ռևոլյուցիոն շարժում։

Թիֆլիսի 1901 թվականի մայիսմեկյան ցույցի ներգործությունը Կովկասի հետագա ամբողջ բանվորական շարժման վրա՝ բացառիկ կերպով մեծ էր։

***

Մայիսի մեկի տրադիցիոն օրը Սովետական Միության մեջ ամեն տարի նշվում է որպես համաժողովրդական տոն, որպես սո-

ցիալիստական շինարարության բնագավառում ձեռք բերած հոյակապ նվաճումների հանրագումարի օր, մեր Հայրենիքի հզորությունը և ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը էլ ավելի ամրապնդելու համար աշխատավորների բոլոր ուժերը մոբիլիզացնելու օր։

Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները 1951 թվականի մայիսմեկյան տոնը դիմավորում են խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի ուժերի անշեղ աճման, իմպերիալիստական, հակադեմոկրատական լագերի անընդհատ թուլացման պայմաններում։ Սովետական ժողովուրդը Մայիսմեկյան տոնը նշում է կոմունիզմի կառուցման համար ծավալված համաժողովրդական պայքարի՝ կոմունիզմի նորակառույցների, բնության վերափոխման ստալինյան նախագծումների, հետպատերազմյան հնգամյա պլանի հաջող կենսագործման պայմաններում։

ՍՍՌՄ-ի տնտեսական վերելքը արտահայտվում է սոցիալիստական արդյունաբերության, գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս բոլոր բնագավառներում ձեռք բերված պատմական մեծ նշա-



նակություն ունեցող նվաճումներով։ Ինչպես ՍՍՌՄ Պետական Պլանային կոմիտեի և ՍՍՌՄ Կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրության մեջ է ասված, հետպատերազմյան հնգամյա պլանը հաջողությամբ կատարվել է, իսկ պլանի կարևորագույն առաջադրանքները զգալիորեն գերակատարվել են։ Սովետական ժողովուրդը ժամանակին կատարելով և գերակատարելով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը, հաջողությամբ ավարտում է Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի շինարարությունը և ձեռնամուխ է եղել կոմունիզմի մեծ կառուցումների՝ Կույբիշևյան, Ստալինգրադյան, Կախովկայի հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր Թուրքմենական, Հարավ-Ուկրաինական և Հյուսիսային-Ղրիմյան ջրանցքների շինարարությանը։ 1951 թվականի Պետական բյուջեն և 1950 թվականի Պետական բյուջեի կատարման արդյունքները փայլուն կերպով արտացոլում են այն հաջողությունները, որը սովետական ժողովուրդը բոլշևիկյան մեծագործ պարտիայի և հանճարեղ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ ձեռք է բերել կոմունիստական հասարակակարգի

կառուցման, մեր հայրենիքի հզորությունը բազմապատկելու բնագավառում։ Սովետական Միության հետպատերազմյան հնգամյա պլանի վերջին տարում, այսինքն 1950 թվականին, արդյունաբերության համախառն արտադրանքը 1940 թվականի մակարդակը գերազանցեց 73 տոկոսով։ Հնգամյա պլանը ՍՍՌՄ արդյունաբերությունը կատարել է ժամկետից շուտ՝ 4 տարի և երեք ամսում։ Հնգամյա պլանով 1950 թվականի համար սահմանված առաջադրանքը ըստ արդյունաբերական արտադրանքի ծավալի գերակատարվել է 17 տոկոսով։ Գերակատարվել են հնգամյա պլանի առաջադրանքները պողպատի ձուլման, գլանվածքի, գունավոր և հազվագյուտ մետաղների արտադրության գծով. ղազգահների, մեքենաների, մեխանիզմների և գործիքների արտադրության, քիմիական արդյունաբերության արտադրանքի և շինանյութերի թողարկման գծով։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերը 1950 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացել են 58 տոկոսով։ Բանվորների աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 1950 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի դիմաց,



աճել է 37 տոկոսով։ Սոցիալիստական արդյունաբերության նման հզոր վերելքը պայմանավորված է նոր ձեռնարկությունների շինարարությամբ, սոցիալիստական ստեղծարար մրցության ու տեխնիկական պրոգրեսի ծավալմամբ, սովետական բանվոր դասակարգի հերոսական աշխատանքով, շրջանառու միջոցների շրջանառության արագացմամբ, ներքին ռեզերվների հմուտ օգտագործմամբ։

Սովետական ժողովուրդը, իր աշխատանքի ու պայքարի մարտական ծրագիրը դարձնելով ընկեր Ստալինի 1946 թվականի փետրվարի 9-ի՝ իր ընտրողների առջև ունեցած պատմական ելույթում առաջադրված խնդիրները, ստեղծել է արդյունաբերության, գյուղատնտեսության, սոցիալիստական կուլտուրայի բուռն վերելք։

Մայիսմեկյան տոնը խոշոր հաջողություններով են դիմավորում մեր երկրի սոցիալիստական գյուղատնտեսության բնագավառի աշխատողները։ Գյուղատնտեսությունը հագեցվել է նոր առաջնակարգ մեքենաներով, տրակտորներով, կոմբայններով, գյուղատնտեսական գործիքներով. բարձրացել է սոցիալիստական դաշտերի բերքատվությու-

նը, գերազանցված է գյուղատնտեսության համախառն արտադրանքի նախապատերազմյան մակարդակը։ Հացահատիկային կուլտուրաների գծով հնգամյա պլանով սահմանված առաջադրանքը կատարվել է գերազանցումով։ Հացահատիկային կուլտուրաների տարածությունը հնգամյակի ընթացքում մեծացել է ավելի քան 20 տոկոսով։ Հացահատիկի համախառն բերքը 1950 թվականին 345 միլիոն փթով գերազանցել է 1940 թվականի բերքին։ Ընդ որում ցորենի արտադրությունը նախապատերազմյան մակարդակի դիմաց ավելացել է 376 միլիոն փթով։ Զգալի չափով գերակատարվել են տեխնիկական կուլտուրաների բերքատվության պետական առաջադրանքները։ Սոցիալիստական գյուղատնտեսությունը աշխարհում ամենամեքենայացված և առաջնակարգ գյուղատնտեսությունն է։ Կոլխոզային գյուղացիությունը և սովխոզների աշխատողները մեծ ոգևորությամբ լուծում են հանրային անասնաբուծության ասպարեզում բոլշևիկյան պարտիայի և Սովետական կառավարության առաջադրանքները։ Այժմ մթերատու անասունների բոլոր տեսակների գլխաքանակը կոլխոզներում զգալի չափով գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։ Օր-օրին



աճում է գյուղատնտեսության մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը։ Հնգամյակի ընթացքում գյուղատնտեսությունը ստացել է 536 հազար տրակտոր՝ փոխադրած 15 ուժանոցի, 93 հազար հացահատիկային կոմբայն, այդ թվում, 39 հազարը՝ ինքնագնաց, 341 հազար տրակտորային գութան, 254 հազար տրակտորային շարքացան և այլ մեքենաներ ու գործիքներ։ Միայն 1949 թվականին սոցիալիստական գյուղատնտեսությունը ստացել է 4—5 անգամ ավելի տրակտորներ, ավտոմեքենաներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ, քան նախապատերազմյան 1940 թվականին, իսկ 1950 թվականին ստացել է ավելի քան 180 հազար տրակտոր՝ 15 ուժանու փոխադրած, 46 հազար կոմբայն, այդ թվում 23 հազար ինքնագնաց կոմբայն, 82 հազար բեռնատար ավտոմոբիլ և ավելի քան 1 միլիոն 700 հազար կցորդ գործիք ու գյուղատնտեսական այլ մեքենաներ։

Կոլխոզային և սովխոզային դաշտերի տասնյակ հազարավոր աշխատողներ արժանացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի և Ստալինյան մրցանակի լաուրեատի կոչման։

Խոշոր հաջողությունների է հասել սովետական գիտությունը, կուլտուրան, գրակա-

նությունը, արվեստը: Սովետական գիտնականները, առաջնորդվելով ընկեր Ստալինի ցուցումներով, հայրենի գիտությունը հարըստացրել են նորանոր հայտնագործություններով: Սովետական գիտության նվաճումներից մեկը ատոմային էներգիայի գաղտնիքին տիրապետելն է, որը նպաստում է մեր երկրի աշխատավորության հետագա առաջընթացին դեպի կոմունիզմ: ՍՍՌՄ-ի տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում և մասնագիտական մյուս ուսումնական հաստատություններում սովորում են ավելի քան 37 միլիոն մարդ, բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ ավելի քան 1 միլիոն 247 հազար մարդ:

1950 թվականին գիտության, արվեստի, գրականության բնագավառում աչքի ընկնող աշխատությունների համար շնորհված Ստալինյան մրցանակները փայլուն կերպով դրսևորում են սովետական գիտնականների, գրողների, արվեստի աշխատողների նվաճումները: Գիտության, տեխնիկայի, գրականության և արվեստի ասպարեզում աչքի ընկնող աշխատությունների, գյուտերի ու նվաճումների համար հնգամյակի տարիներին Ստալինյան մրցանակի լաուրեատի կոչման է արժանացել ավելի քան 6.500 մարդ:



Սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության նվաճումները նյութական հզոր բազա ստեղծեցին սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման համար: Եթե կապիտալիստական երկրներում, առանձնապես Ամերիկայի Միացյալ Նահանգներում և մարշալլականացված մյուս երկրներում օր օրին վատթարանում է աշխատավորների նյութական վիճակը, աճում է գործազրկությունը, ապա ՍՍՌՄ-ում դրությունը միանգամայն հակառակն է: Սովետական Միության հետևողական քաղաքականությունը մասսայական սպառման ապրանքների պետական մանրածախ գների իջեցման գծով էլ ավելի է բարձրացնում ժողովրդի նյութական կենսամակարդակը: Մինչև այժմ, 1947 թվականին մթերային և արդյունաբերական ապրանքների քարտային սիստեմը վերացնելուց հետո, Սովետական պետությունը լայն սպառման ապրանքների գըների չորս իջեցում է կատարել: Ըստ որում, գների առաջին իջեցումից բնակչությունը տարվա ընթացքում շահել է 86 միլիարդ ռուբլի, երկրորդ իջեցումից՝ 71 միլիարդ ռուբլի, երրորդ իջեցումից՝ 110 միլիարդ ռուբլի, իսկ չորրորդ իջեցումից կշահի 34,5 միլիարդ ռուբլի:

*Այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրներում ավելի ու ավելի են սրվում դասակարգային հակասությունները, իսկ իմպերիալիստական ռեակցիան ուժեղացնում է իր հարձակումն աշխատավորության տնտեսական ու դեմոկրատական իրավունքների դեմ, Սովետական Միությունում ավելի քան ուժեղացել է բարոյա-քաղաքական միասնությունը, ավելի է ծաղկում ու բարգավաճում սովետական դեմոկրատիան։ Այդ ամենը վառ կերպով դրսևորվեցին ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետի և Միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների, տեղական Սովետների վերջին ընտրությունների ընթացքում։ Մեր երկրի աշխատավորները այժմ է՛լ ավելի քան սերտորեն են համախմբված բոլշևիկյան պարտիայի, Սովետական կառավարության և Լենինի գործի հանճարեղ շարունակող. մեր մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի շուրջը։*



*Սովետական Միության հզոր ընտանիքում մայիսմեկյան տոնը նորանոր նվաճումներով են դիմավորում Սովետական Հայաստանի աշխատավորները։ Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ռուս մեծ ժողովրդի և ՍՍՌՄ-ի բոլոր ժողովուրդների եղբայրական*



*օգնությամբ ու համագործակցությամբ հասել են ժողովրդական տնտեսության, կուլտուրայի, գիտության, գրականության, արվեստի նոր, հզոր վերելքի ու ծաղկման։*

*Հայաստանի Կ(բ)Պ 15-րդ համագումարը հանրագումարի բերեց Սովետական Հայաստանի նվաճումները։ ՀԿ(բ)Պ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ Համագումարի ընդունած բանաձևում ասված է. «Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները հաշվետու ժամանակաշրջանում, լուծելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և Միութենական կառավարության դիրեկտիվներով առաջադրված խնդիրները, 1950 թվականին հաջողությամբ ավարտեցին ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանը։ Համեմատած 1948 թվականի հետ, արտադրանքի թողարկումն աճել է 46 տոկոսով, որին միաժամանակ ուղեկցել է համարյա բոլոր ձեռնարկությունների աշխատանքի քանակական ցուցանիշների ընդհանուր բարելավումը և շահութաբերության բարձրացումը՝ ի հաշիվ արտադրանքի ինքնարժեքի իջեցման, շրջանառու միջոցների շրջանառության արագացման, արտադրանքի որակի բարելավման, էլեկտրաէներգիայի, հումքի և*

նյութերի խնայողության ուղղությամբ կիրառված միջոցառումներին»:

Ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերությունը համախառն արտադրանքի պետական պլանը 1950 թվականին կատարել է 103 տոկոսով, դրանով իսկ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ արտադրանքի մակարդակը գերազանցել է 2,4 անգամ: Զարգացել է արդյունաբերության, հատկապես մետալուրգիական, մեքենաշինական և քիմիական ճյուղերը: Շահագործման են հանձնվել՝ Քանաքեռի խոշոր գործարանը, Պոլիվինիլացետատի գործարանի, Մյասնիկյանի անվան կոմբինատի մի մասը, Արաբկիրի կահույքի ֆաբրիկան, № 2 հացի գործարանը, Շամպայնի կոմբինատի գինու գործարանը, Սառցարան կոմբինատը, ապակու-տարայի գործարանը Արզնիում, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկան և այլն:

Համաժողովրդական սոցիալիստական մրցությունը, լայնորեն ծավալելով ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում հրաշալի արդյունքներ է տալիս: Աճում է ռեսպուբլիկայի էներգետիկ բազան, շարք են մտնում նորանոր ձեռնարկություններ: Մանր արդյունաբերության ճյուղերի



հետ միասին աչքի ընկնող չափով աճել են սննդի, թեթև, տեքստիլ և տեղական արդյունաբերության ճյուղերը:

Խոշոր հաջողությունների է հասել ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը: Կոլխոզային գյուղացիությունը, իրագործելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը, կարճ ժամանակամիջոցում բարձր ցուցանիշների է հասել ցանքատարածությունների ընդարձակման և գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում:

Այժմ ռեսպուբլիկայի ամբողջ ցանքատարածության մոտ 90 տոկոսը մշակվում է մեքենա-տրակտորային կայանների միջոցով: Աճել է կոլխոզների եկամուտը, կոլխոզնիկների կյանքը դարձել է ունևոր և երջանիկ: Կոլխոզների խոշորացումը նոր պայմաններ է ստեղծել բերքատվության բարձրացման համար: Կոլխոզնիկների ցանկությամբ 1.043 կոլխոզներ միացվել են. այժմ ռեսպուբլիկայում կան 666 կոլխոզ, որոնցից 221-ը խոշորացված կոլխոզներ են:

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության առաջավորներից 2.900 մարդ պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով,

իսկ 116 մարդու շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։

Բարելավվել է աշխատանքի կազմակերպումը կոլխոզներում։ 1950 թվականին աշխատունակ մեկ կոլխոզնիկի վաստակած աշխօրերի քանակը 1948 թվականի 166 աշխօրի դիմաց կազմել է 192 աշխօր։ Ի կատարումն ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1950 թվականի մայիսի 30-ի որոշման, ռեսպուբլիկայի կոլխոզները ձեռնամուխ են եղել ցորենի ցանքերի ընդարձակմանը և արդեն 1950 թվականի աշնանը աշնանացան ցանքերը ավելացել են 30 հազար հեկտարով։ Կոլխոզային գյուղի աշխատավորները պայքարում են ռեսպուբլիկան սեփական հացի պաշարով առաջիկա տարիներին ապահովելու առաջադրանքը կենսագործելու համար։

Ժողովրդական տնտեսության վերելքին զուգընթաց բուռն թափով ծաղկում է Սովետական Հայաստանի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան, գիտությունը, գրականությունը և արվեստը։

Ռեսպուբլիկայի գիտնականները իրենց աշխատանքի հիմքում դնելով ընկեր Ստալինի ցուցումները, խոշոր հաջողություններ են ձեռք բերել գիտության առանձին պրոբլեմների լուծման բնագավառում և շա-



տերը արժանացել են Ստալինյան մրցանակի Լաուրեատի կոչման։

***

Մայիսմեկյան տոնը արտադրական հաղթանակների և աշխատանքային վերելքի հրադրության մեջ են դիմավորում ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները, որոնք վստահորեն և անշեղ կերպով ընթանում են սոցիալիզմի ուղիով։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրները, որ իրենց ժողովրդական տնտեսությունը վարում են պլանային կարգով, մեծ հաջողություններ են ձեռք բերել սոցիալիստական ինդուստրացման բնագավառում, որը վկայում է նրանց տնտեսական աճը։ Ահա մի քանի թվեր, որոնք համոզիչ կերպով ցույց են տալիս այդ աճը։

Լեհաստանում սոցիալիստական արդյունաբերությունը 1950 թվականին նշված արտադրական պլանը կատարեց 107,4 տոկոսով։ 1950 թվականը տնտեսական զարգացման և սոցիալիզմի հիմքերի կառուցման վեցամյա պլանի կենսագործման առաջին տարին էր Լեհաստանում։ Պետք է նշել, որ լեհական արդյունաբերությունն արագ տեմպով է զարգանում վեցամյա պլանի կենսագործման առաջին օրվանից սկսած։ Այսպես, լեհա-

կան արդյունաբերությունը 1949 թվականի համեմատությամբ, 1950 թվականին արտադրանքի աճ է տվել 30,8 տոկոսով, ընդորում աճը տեղի է ունեցել արդյունաբերության բոլոր ճյուղերում էլ։ Լեհաստանը՝ երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ Եվրոպայում ամենից ավելի քայքայված այդ երկիրը, իր ժողովրդա-դեմոկրատական կարգի շնորհիվ կարողացավ ոչ միայն վերականգնել երկրի էկոնոմիկան, այլև արագ կերպով զարգացնել այն՝ սոցիալիստական հիմունքներով։

Չեխոսլովակիայում արդյունաբերական արտադրանքի 1950 թվականի պլանը կատարվեց 102,7 տոկոսով։ Չեխոսլովակյան արդյունաբերության զգալի աճման մասին է խոսում այն փաստը, որ 1950 թվականին ծանր արդյունաբերության արտադրանքը գերազանցեց 1949 թվականի մակարդակը 15,6 տոկոսով, թեթև արդյունաբերության արտադրանքը՝ 10,8 տոկոսով։

Հունգարիայում արդյունաբերությունը 1950 թվականին, կենսագործելով հնգամյա պլանի առաջին տարվա առաջադրանքները, պլանը կատարեց 109,6 տոկոսով։ Այս նշանակում է, որ 1949 թվականի համեմատությամբ 1950 թվականին արտադրանքն աճել



էր 35,1 տոկոսով, այդ թվում՝ ծանր արդյունաբերության արտադրանքը՝ 36,2 տոկոսով, թեթև արդյունաբերության արտադրանքը՝ 34 տոկոսով։ Երկաթուղային վագոնների և բեռնատար մեքենաների թողարկումը 1950 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, ավելացավ ավելի քան 50 տոկոսով։

Բուլղարիայում, որտեղ արդյունաբերական արտադրության պլանը 1950 թվականին կատարվեց 100,2 տոկոսով, արտադրանքի ծավալը 1949 թվականի համեմատությամբ աճել է 23,3 տոկոսով։ Բուլղարիայում 1950 թվականին 21,1 տոկոսով ավելի էլեկտրաէներգիա է արտադրվել, 31,4 տոկոսով ավելի քարածուխ է արդյունահանվել, 300 տոկոսով ավելի բամբակե տեքստիլ ապրանք է արտադրվել, քան 1939 թվականին։ Բուլղարիան, երբեմնի այդ հետամնաց գյուղատնտեսական երկիրը, այժմ ստեղծում է իր սեփական ծանր արդյունաբերությունը։ Այսպես, 1950 թվականին Բուլղարիայում կառուցվել և շահագործման է հանձնվել ավտովերանորոգման երկու գործարան, էլեկտրամեքենաշինական գործարան, էլեկտրաապարատուրայի գործարան, հանքա-հարստացուցիչ ֆլոտացիոն ֆաբրիկա, նավաշինարան և այլն։ Այս բոլորը պեր-

ճախոս կերպով վկայում են, որ Բուլղարիան
հաստատուն կերպով ոտք է դրել իր էկոնո-
միկայի ինդուստրացման ուղին։
Նշանակալից հաջողությունների է հասել
նաև Ռումինիայի արդյունաբերությունը, մի
երկիր, որն իր էկոնոմիկայով, չնայած ունե-
ցած բնական մեծ հարստություններին,
բուրժուա-կալվածատիրական կլիկի տիրա-
պետության հետևանքով, ամենահետամնաց
երկիրն էր Եվրոպայում։ Ժողովրդա-դեմոկրա-
տական կարգեր հաստատվելուց հետո Ռու-
մինիայի էկոնոմիկան սկսեց արագորեն զար-
գանալ, և արդեն 1950 թվականին ռումինա-
կան արդյունաբերության արտադրանքը
կազմեց 1938 թվականի մակարդակի 140
տոկոսը։ Ռումինիայում սկսեց աճել ծանր
արդյունաբերությունը։ 1951 թվականի հուն-
վարի 1-ից Ռումինիան ձեռնամուխ է եղել իր
առաջին հնգամյա պլանի կենսագործմանը,
որը արմատապես բարեփոխելու է նրա էկո-
նոմիկան։
Խոշոր փոփոխություններ են տեղի ունե-
նում Ալբանիայում՝ այդ փոքրիկ լեռնային
երկրում։ Անցյալում Եվրոպայի ամենահե-
տամնաց մի անկյուն հանդիսացող այդ եր-
կիրն այժմ արագորեն զարգանում է սոցիա-
լիզմի ուղիով՝ Սովետական Միության եղ-



բայրական անշահախնդիր օգնության շնոր-
հիվ։
Այժմ Ալբանիայում, որտեղ նախկինում
հաղորդակցության հիմնական ուղիներ էին
փոքրիկ լեռնային կածանները, կառուցվել է
երկաթուղային չորս մագիստրալ։ Տիրանա-
յում կառուցվել են՝ մեքենայի պահեստի մա-
սերի գործարան, հիդրոէլեկտրակայան։ Կա-
ռուցվում են շաքարի, ցեմենտի, նավթա-
մշակման գործարաններ, կաշվի-կոշիկի
ֆաբրիկաներ և այլ ձեռնարկություններ։ Այս
բոլորը խոսում են այն մեծ հաջողություննե-
րի մասին, որ ձեռք է բերել Ալբանիան երկ-
րի ժողովրդական տնտեսության զարգաց-
ման ասպարեզում։
Խոշոր են ժողովրդական դեմոկրատիայի
երկրների ձեռք բերած հաջողությունները
նաև գյուղատնտեսության զարգացման աս-
պարեզում։ Ազատագրվելով կալվածատիրա-
կան ճնշումից, ժողովրդական դեմոկրա-
տիայի երկրների գյուղացիությունը ավելաց-
նում է գյուղատնտեսական մթերքների ար-
տադրությունը։ Գյուղացիության մի մասը,
որ գիտակցել է կոլեկտիվ աշխատանքի օգ-
տակարությունը, միավորվել է հողը համա-
տեղ մշակող ընկերություններում, արտա-
դրական գյուղատնտեսական կոոպերատիվ-

ներում։ Դրանով իսկ գյուղատնտեսության սոցիալիստական սեկտորի հիմքն է դրված ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։ Միաժամանակ այդ հնարավորություն է տալիս բարձրացնելու գյուղատնտեսության մեքենայացումը, որը նպաստելու է արտադրանքի աճմանը։ Այսպես, 1949 թվականի համեմատությամբ 1950 թվականին Լեհաստանում գյուղատնտեսության արտադրանքն ամբողջությամբ վերցրած աճել է 13 տոկոսով, իսկ անասնաբուծության արտադրանքը՝ 24 տոկոսով։ 1950 թվականի վերջերին Լեհաստանում կար 2200 հողագործական արտադրական կոոպերատիվ, այսինքն՝ ինը անգամ շատ, քան 1949 թվականին։

Չեխոսլովակիայում արդեն սոցիալիստական սեկտորի ձեռքում է գտնվում երկրի հողային տարածության 22 տոկոսը։ Հունգարիայում 1950 թվականին սոցիալիստական սեկտորն իր տրամադրության տակ ուներ վարելահողերի 13,1 տոկոսը, այսինքն՝ երկու անգամ շատ, քան 1949 թվականին։ Հացահատիկային ցանքերի բերքատվությունը բարձրացել է 9,2 տոկոսով։ 1950 թվականին Հունգարիայի դաշտերում աշխատում էր 6 հազարից ավելի տրակտոր։

Բուլղարիայում 1950 թվականի վերջերին



կոոպերատիվ-հողագործական տնտեսությունների մեջ էր միավորվել գյուղացիների կեսից ավելին։ Դրա շնորհիվ 1950 թվականին ցորենի բերքատվությունը նախորդ տարվա համեմատությամբ բարձրացավ 22 տոկոսով, տարեկանինը՝ 30 տոկոսով, ծխախոտինը՝ 20 տոկոսով, բամբակինը՝ 10 տոկոսով։

Ռումինիայում այժմ կա ավելի քան 1000 գյուղատնտեսական կոոպերատիվ տնտեսություն, որոնց դաշտերում աշխատում է ավելի քան 6 հազար տրակտոր, որոնց կեսն ստացվել է 1950 թվականին։ Ռումինիայում 1950 թվականին ստացված բերքը 43 տոկոսով ավելի էր նախորդ տարվա բերքից։

Ալբանիայում նույնպես գյուղացիներից շատերը միավորվել են գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում էկոնոմիկան սոցիալիստական հիմունքներով զարգացնելը հնարավորություններ է տալիս լայնորեն ծավալելու սոցիալիստական աշխատանքային մրցությունը, որը նպաստում է արտադրանքի աճին և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Դրա հետ միասին՝ ժողովրդական դեմոկրատիայի երկրների՝ սոցիալիզմի ուղիով

զարգանալը նպաստում է աշխատավոր մասսաների բարեկեցության աճմանը։ Ամենուրեք ժողովրդական դեմոկրատիայի երկրներում վերացված է գործազրկությունը, տեղի է ունենում լայն սպառման ապրանքների գների սիստեմատիկ իջեցում։ 1950 թվականին միջին աշխատավարձը բարձրացել է. Լեհաստանում՝ 6 տոկոսով, Հունգարիայում՝ 16,6 տոկոսով, Չեխոսլովակիայում՝ 26 տոկոսով։ Ծավալվում է բնակարանային շինարարությունը։ 1950 թվականին Հունգարիայում կառուցվել է 23.400 բնակարան, Ռումինիայում բնակարանային շինարարության վրա ծախսվել է մի հսկայական գումար՝ 5,5 միլիարդ լեյ։ Աճում է աշխատավորության համար հիմնադրվող բուժհիմնարկների ցանցը։ Այսպես, անցած երկու տարում Չեխոսլովակիայում սանատորական հիվանդանոցների և ծննդատների մահճակալների քանակն աճել է 22 տոկոսով, իսկ Ալբանիայում՝ 135 տոկոսով։ Մեծ հաջողություններ են ձեռք բերվել նաև ժողովրդական լուսավորության բնագավառում։ Լեհաստանում 1950 թվականին միջնակարգ դպրոցները 38 տոկոսով շատ մարդ է ավարտել, քան 1949 թվականին։ Ուսանողների թիվը, 1938 թվականի համեմատությամբ, ավելացել է կրկնա-



կի չափով։ Եթե առաջ կրթությունը մատչելի էր միայն բուրժուազիային, ապա այժմ աշխատավորության առաջ լայն բացված են բոլոր ուսումնական հաստատությունների դռները։ Սովորողների մեջ անընդհատ ավելանում է երիտասարդ բանվորների և գյուղացիների տոկոսը։ Այսպես, օրինակ՝ եթե Հունգարիայում կապիտալիզմի ժամանակ՝ 1937—1938 ուսումնական տարում, բարձրագույն ուսումնական հաստատություններում ուսանողների թվի մեջ բանվորները և աշխատավոր գյուղացիները կազմում էին միայն 3,5 տոկոս, ապա 1949—1950 ուսումնական տարում նրանց տոկոսը հասնում էր 60-ի։ Մասսայական տիրաժներով լույս են ընծայվում գրքեր, բրոշյուրներ, թերթեր։

Նշանակալի հաջողություններ են ձեռք բերել նաև Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի աշխատավորները, որոնք միասնական սոցիալիստական պարտիայի ղեկավարությամբ վերականգնում են ժողովրդական տնտեսությունը՝ դեմոկրատական հիմունքներով։

Առանձնապես պետք է նշել չին ժողովրդի հաջողությունները, որը տապալել է գաղութային լուծը և ստեղծել իր ժողովրդական

ռեսպուբլիկան։ Իմպերիալիզմի տիրապետության ժամանակ Չինաստանի ամբողջ արդյունաբերության ավելի քան 90 տոկոսը գտնվում էր օտարերկրյա կապիտալի ձեռքում։ Իսկ այժմ արդյունաբերության առաջատար ճյուղերը պատկանում են ժողովրդական պետությանը, իսկ միջակ և մանր ձեռնարկությունների մի մասը՝ չինական արդյունաբերողներին։ Դրա հետևանքը եղավ արտադրության զգալի աճումը։ Այսպես, Հյուսիս-Արևելյան Չինաստանում, որտեղ կենտրոնացված են ծանր արդյունաբերության հիմնական ձեռնարկությունները, արտադրությունը 1949 թվականի համեմատությամբ աճել է երկու անգամ։ Բամբակեղենի արդյունաբերությունը 1950 թվականին իր պլանը կատարեց 116 տոկոսով։ Քարածուխի հանույթը 1950 թվականի առաջին ինը ամսում գերազանցեց 1949 թվականի մակարդակը 37 տոկոսով, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունն աճեց 30 տոկոսով։ 1950 թվականին վերականգնվել է 22 հազար կիլոմետր երկաթուղի և սկսվել է երկաթուղային նոր մագիստրալների կառուցումը։ Ամրապնդվել է Չինաստանի դրամական սիստեմը, որը հնարավորություն տվեց ոչ միայն կայունացնելու գները, այլև 1950 թվականին



գներն իջեցնելու՝ 20—25 տոկոսով։ Հիմնովին բարելավվել է բանվոր դասակարգի, գյուղացիության և աշխատավոր ինտելիգենցիայի դրությունը, մանավանդ երբ նկատի ունենանք, որ մի շարք հարկեր վերացվել են (աղի հարկ, գյուղատնտեսական հարկ և այլն), փոստային առաքումների վարձերը պակասացվել են 50 տոկոսով, երկաթուղային տարիֆները՝ 30—50 տոկոսով։ Օրենքներ են ընդունվել խոշոր ձեռնարկություններում բանվորների ապահովագրման, ծերության կենսաթոշակ նշանակելու վերաբերյալ և այլն։ Այս ամենը խոսում է չին ժողովրդի հաջողությունների մասին, որը վստահորեն ընթանում է ժողովրդա-դեմոկրատական զարգացման ուղիով։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների այս հաջողությունները նշանակում են, որ ամրապնդվում են դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերը՝ համայն աշխարհում։ Այս բանը կատաղեցնում է միջազգային ռեակցիային և նրա գլուխ կանգնած ամերիկյան իմպերիալիստներին, որոնք ձգտում են այն բանին, որպեսզի ամբողջ աշխարհի վզին փաթաթեն իրենց տիրապետությունը։ ԱՄՆ-ի ագրեսիվ իմպերիալիստական քաղաքականության ոգեշնչողները կապիտա-

լիստական ամենախոշոր մոնոպոլիստներն են, որոնք իրենց ձեռքն են գցել երկրի ամբողջ էկոնոմիկան և իրենց տնտեսական շահերին են ենթարկում երկրի ներքին ու արտաքին ամբողջ քաղաքականությունը։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում ամբողջ իշխանությունը փաստորեն պատկանում է 60 միլիարդատեր-բանկիրների ընտանիքների, որոնց գլխին կանգնած են ֆինանսական հինգ ամենաուժեղ խմբեր՝ Մորգանի, Ռոկֆելերի և մյուսների խմբերը։ Երկրորդ համաշխարհային պատերազմը հասցրեց այն բանին, որ ԱՄՆ-ում պետությունը ավելի սերտորեն միաձուլվեց մոնոպոլիստական կապիտալի հետ։ Պատերազմի տարիներին ԱՄՆ-ի կառավարությունը պետության հաշվին (այսինքն՝ ամերիկայի աշխատավորներից զանազան հարկերի միջոցով կորզած միջոցների հաշվին) կառուցեց մեծ քանակությամբ ձեռնարկություններ, որոնք հետագայում՝ շահագործելու համար հանձնեց կապիտալիստական մոնոպոլիստներին։ Այդ մոնոպոլիստները դրա շնորհիվ հսկայական շահույթ ստացան, առանց սեփական կապիտալ ներդրումների։ Այսպես, նույնիսկ ամերիկյան պաշտոնական, բացահայտորեն նըվազեցված տվյալներով, ամերիկյան մոնո-



պոլիաների պատերազմի տարիների (1940—1945) զուտ եկամուտը կազմեց մի վիթխարի գումար՝ 52 միլիարդ դոլար։

Հետպատերազմյան տարիներին ամերիկյան մոնոպոլիաները «Մարշալլի պլանի» օգնությամբ և Հյուսիս-Ատլանտյան բլոկի երկրների վերակառուցման «ծրագրի» կենսագործման միջոցով ստրկացնելով մի շարք կապիտալիստական երկրներ, շարունակում էին ավելացնել իրենց շահույթները։ Էկոնոմիկայում տիրապետություն հաստատելով կապիտալիստական մոնոպոլիաները իրենց կամքն են թելադրում ամերիկյան կառավարությանը։ Կառավարության մեջ և պետական ապարատում կարևորագույն պոստերը պատկանում են կապիտալիստական մոնոպոլիաների անմիջական դրածոներին։ Բավական է ասել, որ ԱՄՆ-ի ներկայիս պետական քարտուղար Աչեսոնը Մորգանին և Ռոկֆելերին սպասարկող ադվոկատների գրասենյակի անդամ է։ Ֆինանսների մինիստր Ջոն Սնայդերը խոշոր բանկիր է՝ Սան-Լուիից, նրա տեղակալ Արչիբալդ Ուիլլինսը նույնպես խոշոր բանկիր է, ավիացիայի մինիստր Սայմինգտոնը խոշոր կապիտալիստ է, էլեկտրաարդյունաբերության ձեռնարկատեր։ ԱՄՆ-ի կոնգրեսը նույնպես կազմված է մո-

նոպոլիստական կապիտալի ուղղակի դրա-
ծոներից: Բավական է հիշատակել սենա-
տորներ Տաֆտի, Կոննոլիի, Վանդենբերգի
անունները, որոնք սերտորեն կապված են
մետալուրգիական ու նավթային կապիտալի
հետ, ինչպես նաև ավտոմոբիլային արդյու-
նաբերության մագնատների հետ: Այս բոլո-
րը խոսում է այն մասին, որ ԱՄՆ-ի կառա-
վարությունը ծառայում է Ուոլ-ստրիտի մագ-
նատներին: Հենց այդ պատճառով էլ ամերի-
կյան կառավարության քաղաքականությունը
կրում է բացահայտորեն հակաժողովրդա-
կան, ռեակցիոն բնույթ, ագրեսիվ և իմպե-
րիալիստական քաղաքականություն է:

Երկրում մի բուռ մոնոպոլիստների տի-
րապետության հաստատումը՝ չափազանց
ծանր է անդրադառնում Ամերիկայի աշխա-
տավոր մասսաների դրության վրա: Բավա-
կան է ասել, որ ամերիկյան բնակչության
76 տոկոսը ավելի քիչ եկամուտ է ստանում,
քան անհրաժեշտ է ապրուստի մինիմումի հա-
մար: Արդյունաբերության հիմնական ճյուղե-
րի բանվորների ռեալ աշխատավարձը 1950
թվականին, 1944 թվականի համեմատու-
թյամբ, պակասել է 12 տոկոսով: Աշխատա-
վորության գնողունակությունը, 1945 թվա-
կանի համեմատությամբ, 1950 թվականին



նվազել է 25 տոկոսով: Ներկայումս ԱՄՆ-ում
գործազուրկների և կիսագործազուրկների
թիվը հասնում է ավելի քան 18 միլիոնի:
Այս բոլորը հետևանք է կապիտալիստական
մոնոպոլիստների ռեակցիոն քաղաքականու-
թյան, որոնց շահերին է ծառայում ամերիկ-
յան կառավարությունը: Ուժեղ կերպով պատ-
րաստվելով նոր ագրեսիվ պատերազմի, ա-
մերիկյան մոնոպոլիստական կապիտալի
պարագլուխները բռնել են երկրի ներքին
կյանքը ֆաշիզացման ենթարկելու ուղին,
հարձակումներ են գործում բանվոր դասա-
կարգի իրավունքների դեմ, ձգտում են ոչըն-
չացնել բուրժուա-դեմոկրատական ազատու-
թյունների վերջին մնացորդները: Ընկեր
Ստալինը մատնանշեց այն սերտ կապը, որ
գոյություն ունի իմպերիալիստական պե-
տությունների արտաքին ագրեսիվ քաղա-
քականության և նրանց ներքին ռեակցիոն
ֆաշիստական քաղաքականության միջև:

«Ոչ մի կապիտալիստական երկիր չի կա-
րող լուրջ պատերազմ մղել, նախապես չամ-
րապնդելով իր սեփական թիկունքը, չսան-
ձահարելով «իր» բանվորներին, չսանձահա-
րելով «իր» գաղութները: Այստեղից էլ բուր-
ժուական կառավարությունների քաղաքա-
կանության ատիճանական ֆաշիզացիան»:

Այսպես եղավ Գերմանիայում, 1933 թվականին, որտեղ ֆաշիստական դիկտատուրա հաստատվեց հենց այն ժամանակամիջոցում, երբ գերմանական իմպերիալիստներն սկսեցին ուժեղ կերպով նախապատրաստել երկրորդ համաշխարհային պատերազմը՝ իրենց ամերիկյան և անգլիական եղբայրակիցների աջակցությամբ։ Ժամանակակից իրադարձությունները կրկին անգամ հաստատում են ընկեր Ստալինի հանճարեղ խոսքերի ճշմարտացիությունը։ Հենց այժմ է, որ ամերիկյան իմպերիալիստները, ագրեսիվ պատերազմ պատրաստելով, ուժեղ կերպով ֆաշիզացիայի են ենթարկում ԱՄՆ-ի ամբողջ ներքին կյանքը։ Այս մասին են խոսում այն մի շարք ռեակցիոն օրենքները, որոնք ընդունվել են ԱՄՆ-ում, վերջին տարիներին։ Բավական է հիշել 1947 թվականին ընդունված Տաֆտ-Հարտլիի հակաբանվորական օրենքը, որը վերացրեց բանվոր դասակարգի բոլոր այն իրավունքները, որ նա ձեռք էր բերել տասնամյակների ընթացքում, համառ պայքարի գնով։ Այդ օրենքը պրոֆմիությունններին արգելում է որևէ քաղաքական գործունեություն վարել, արգելում է ազգային մասշտաբով կոլեկտիվ պայմանագրեր



կնքել, և փաստորեն անհնարին է դարձնում գործադուլ անելը։

1950 թվականի սեպտեմբերին ԱՄՆ-ում ընդունված ֆաշիստական օրենքի հիման վրա փաստորեն օրենքից դուրս դրվեցին կոմունիստական պարտիան և մյուս պրոգրեսիվ կազմակերպությունները։ ԱՄՆ-ում մոլի կերպով հետապնդվում են պրոգրեսիվ հասարակական գործիչները, անվանի գրողները, գիտնականները միայն նրա համար, որ նրանք հանդես են գալիս խաղաղության, դեմոկրատիայի օգտին՝ ընդդեմ ռեակցիայի։ Առանց որևէ մեղքի բանտ են նետված ամերիկյան կոմպարտիայի մի շարք ղեկավարներ։ Բանտում տանջամահ են արվում պրոգրեսիվ շատ գրողներ և գործիչներ։ Խտրականություն է սահմանվում ռասսայական և ազգային փոքրամասնությունների նկատմամբ։ Հալածանքների և հետապնդումների են ենթարկվում ոչ միայն նեգրերը, այլև սլավոնները, չինացիները, մեքսիկացիները, և մյուս ազգային փոքրամասնությունները։ Մոլեգնում է ամերիկյան հետաքննությունների ֆեդերալ բյուրոն, որը դարձել է մի յուրահատուկ գեստապո։

Սակայն ֆաշիզմի քաղաքականությունը դիմադրության է հանդիպում Ամերիկայի

աշխատավոր մասսաների կողմից և ավելի
է ուժեղացնում ներքին հակասությունները
ԱՄՆ-ում։ Ընկեր Ստալինը ասում է, որ
անցումը ֆաշիզմին «...հարկավոր է դի-
տել նաև որպես բուրժուազիայի թու-
լության նշան, որպես նշան այն բա-
նի, որ բուրժուազիան արդեն անկարող
է իշխել պառլամենտարիզմի ու բուրժուա-
կան դեմոկրատիայի հին մեթոդներով,
այդ պատճառով էլ նա ստիպված է ներքին
քաղաքականության մեջ դիմելու կառավար-
ման տեռորիստական մեթոդների,— որպես
նշան այն բանի, որ արտաքին խաղաղ քա-
ղաքականության բազայի վրա նա այլևս
անկարող է ելք գտնել ներկա դրությունից,
այդ պատճառով էլ նա ստիպված է դիմելու
պատերազմի քաղաքականության»։

Այսպիսով, ԱՄՆ-ի ներքին կյանքի ֆա-
շիզացումը վկայում է ամերիկյան իմպե-
րիալիզմի թուլության մասին։ Ներքին ռեակ-
ցիոն քաղաքականությունը համապատաս-
խանում է ամերիկյան իմպերիալիզմի ար-
տաքին ագրեսիվ քաղաքականությունը։ Ա-
մերիկյան մոնոպոլիստները, որոնք անչափ
հարստացել են պատերազմի ժամանակ,
փորձում են միաժամանակ իրենց տիրապե-
տությունը հաստատել ամբողջ աշխարհում։



Ընդորում դրա համար նրանք օգտագործում
են իրենց հարստությունը, որպեսզի ստրկաց-
նեն առանձին երկրներ, և մարդկությանը
վախեցնում են ատոմային ռումբով։ Կազմա-
վորելով զանազան ռազմական բլոկներ, ինչ-
պես ագրեսիվ Հյուսիս-ատլանտյան դաշին-
քը, զանազան երկրներում ստեղծելով ռազ-
մական բազաներ, ամերիկյան իմպերիա-
լիստները ձգտում են ագրեսիվ, հակասովե-
տական պատերազմ հրահրել։ ԱՄՆ-ի
1950—1951 թվերի ռազմական ծախսերը
կազմում են երկրի բյուջեի 76 տոկոսը։

Ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ
պլաններում աչքի ընկնող տեղ են գրավում
Եվրոպայի երկրները։ Արևմտա-եվրոպական
երկրների կառավարող շրջանների դավաճա-
նական քաղաքականության շնորհիվ՝ ամե-
րիկյան իմպերիալիստները «Մարշալլի պլա-
նի» օգնությամբ ստրկացրին այդ երկրները,
նրանց վզին փաթաթելով իրենց տիրապե-
տությունը։ «Մարշալլի պլանը», որի պաշ-
տոնական նպատակն է՝ «Եվրոպական երկր-
ների տնտեսական վերականգնումն ու զար-
գացումը», իրականում դարձել է այդ պլանին
հարող երկրների տնտեսական քայքայման ու
ստրկացման պլան։ Մարշալլականացված եր-

կըրներում արտադրության մակարդակը անընդհատ և արագ կերպով իջնում է։

«Մարշալլի պլանի» քայքայիչ ներգործությունը առանձնապես ցայտուն կերպով երևան է գալիս Ֆրանսիայի օրինակով։ «Մարշալլի պլանի» համաձայն Ֆրանսիան հարկադրված է ներմուծել ամերիկյան ցածրորակ ածուխը, որը ֆրանսիական ածխահանքերի մեծ մասը փակելու սպառնալիքի տակ է դնում։ 1949 թվականին կիսով չափ պակասեց տրակտորների արտադրությունը Ֆրանսիայում, քանի որ նա հարկադրված է տրակտորներ ներմուծել Ամերիկայից։

Դրա հետ միասին վատանում է աշխատավոր մասսաների դրությունը։ Արտադրության կրճատման հետևանքով աճում է գործազրկությունը։ Զգալիորեն աճել են պարենային և լայն սպառման ապրանքների գները։ Պարենային ապրանքների գները 1949 թվականին Ֆրանսիայում 20 անգամ, իսկ Իտալիայում 60 անգամ ավելի բարձր էին, քան 1938 թվականին։ Միևնույն ժամանակ անչափ աճում են հարկերը։ Այսպես, օրինակ՝ Ֆրանսիայում հարկերը նախապատերազմյան ժամանակի համեմատությամբ ավելացել են 30 անգամ։ Այս ամենը ցույց է տալիս մարշալլականացված երկրների աշխատավորնե-



րի աղետալի վիճակը։ Մարշալականացված երկրների քայքայումը իրենից ներկայացնում է խիստ հակապատկերը տնտեսական այն հսկայական վերելքի, որ ապրում են ժողովրդական դեմոկրատիայի երկրները։

Ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ պլաններում մեծ տեղ է գրավում Արևմտյան Գերմանիան։ Կոպիտ կերպով խախտելով Յալթայի և Պոտսդամի համաձայնագրերով ստանձնած պարտավորությունները, ամերիկյան իմպերիալիստները վարում են Գերմանիայի պառակտման քաղաքականություն, Արևմտյան Գերմանիայում ստեղծելով Ադենաուերի մարիոնետային կառավարությունը։ Ամերիկյան իմպերիալիստները, վերածնելով գերմանական միլիտարիզմը և վերականգնելով գերմանական ռազմական պոտենցիալը, Արևմտյան Գերմանիան դարձնում են իրենց գլխավոր զինանոցն ու ռազմական պլացդարմը՝ Եվրոպայում իրենց ագրեսիվ պլաններն իրագործելու համար։ Ամերիկյան իմպերիալիզմը հարկադրեց Արևմտյան Գերմանիայի ներկայացուցիչներին Ֆրանսիայի, Իտալիայի, Հոլանդիայի, Բելգիայի և Լյուքսեմբուրգի ներկայացուցիչների հետ միասին 1951 թվականի մարտի 19-ին կնքել մի պայմանագիր՝ այսպես կոչված Շումանի

պլանի մասին, որի համաձայն պետք է ըստեղծվի «Մանր արդյունաբերության միավորում», որի տրամադրության տակ պետք է դրվի այդ երկրների ամբողջ լեռնա-ածխային, մետալուրգիական արդյունաբերությունը։ Նախագիծը նախատեսում է ստեղծել խոշորագույն մոնոպոլիաների ներկայացուցիչներից կազմված՝ այսպես կոչված «Գերագույն օրգան», որի ձեռքը պետք է անցնի արևմտա-եվրոպական երկրների ամբողջ ծանր արդյունաբերությունը։ Պայմանագրի նախագծում խոսվում է այն մասին, որ Շումանի պլանին մասնակցող երկրները հրաժարվում են իրենց սուվերեն իրավունքներից քարածխային և մետալուրգիական արդյունաբերության նկատմամբ։ Շումանի այդ տխրահռչակ պլանի առթիվ Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկայի կառավարությունը հրապարակեց մի հայտարարություն, որով մերկացնում է այդ պլանի իմպերիալիստական նպատակները, այն, որ այդ պլանն ուղղված է Եվրոպայի ժողովուրդների շահերի դեմ, Գերմանիայից անջատում է նրա արդյունաբերական՝ Ռուրի մարզը և մյուս երկրներին զրկում է իրենց տնտեսությունը կառավարելու սուվերեն իրավունքներից։ Այդ միավորմամբ այն նպա-



տակն է հետապնդվում, որ արագացվի Արևմտյան Գերմանիայի վերառազմականացումը և Եվրոպայում Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ բլոկի համար ռազմա-արդյունաբերական բազայի ստեղծումը։

Այդ նախագծի թխումը, որ կատարվեց այն ժամանակ, երբ Փարիզում տեղի է ունենում չորս տերությունների արտաքին գործերի մինիստրների տեղակալների խորհրդակցությունը, նշանակում է, որ ամերիկյան իմպերիալիզմը ձգտում է վիժեցնել արտաքին գործերի մինիստրների խորհրդի նախատեսվող սեսիան՝ գերմանական հարցի վերաբերյալ։ Սովետական կառավարությունը, որ անշեղորեն պայքարում է խաղաղության համար, ընդդեմ իմպերիալիստական ագրեսիայի, պնդում է, որպեսզի չորս տերությունների արտաքին գործերի մինիստրների Խորհրդի սեսիայի օրակարգում դրվի Գերմանիայի ապառազմականացման վերաբերյալ Պոտսդամի համաձայնագրի կատարման հարցը, ինչպես նաև չորս տերությունների զինված ուժերի կրճատման հարցը, քանի որ այդ հարցերը կարևորագույն նշանակություն ունեն ընդհանուր խաղաղությունն ապահովելու համար։ Սակայն չնայած համաձայնություն ձեռք բերելու հա-

մար սովետական դելեգացիայի գործադրած բոլոր ջանքերին, արևմտյան տերությունների դելեգացիաների անհաշտ դիրքի հետևանքով չորս տերությունների արտաքին գործերի մինիստրների տեղակալների խորհրդակցությունը ձգձգվում է։

Ձգտելով համաշխարհային տիրապետություն հաստատել, ամերիկյան իմպերիալիստները ագրեսիվ քաղաքականություն են վարում աշխարհի բոլոր մասերում։

Ամերիկյան իմպերիալիստները առանձին կտրուկությամբ զավթողական քաղաքականություն են վարում Հեռավոր Արևելքում, որտեղ 1950 թվականին ագրեսիայի նախապատրաստությունից նրանք անցան պատերազմի հրահրմանը, զինված ինտերվենցիա սկսելով կորեական ժողովրդի դեմ։ ԱՄՆ-ը միաժամանակ ագրեսիա կատարեց նաև Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի դեմ, օկուպացնելով չինական Տայվան կղզին և օդային հարձակումներ կատարելով չինական բնակավայրերի վրա։ Ահա ավելի քան տաս ամիս է, որ կորեական ժողովուրդը արյունահեղ մարտերում պաշտպանում է իր ազատությունն ու անկախությունը ընդդեմ ամերիկյան զավթիչների։ Կորեական ժողովրդին օգնության եկան չինական կամա-



վորները, որոնք գիտակցում են, թե ինչպիսի մեծ վտանգ է ներկայացնում Կորեայում ամերիկյան ագրեսիան՝ հենց Չինաստանի համար։

Ամերիկյան իմպերիալիստները Կորեայում իրենց զավթողական պատերազմը քողարկում են ՄԱԿ-ի դրոշով։ Միավորված Ազգերի Կազմակերպությունն իր անկումով այնտեղ է հասել, որ ոչ միայն հավանություն տվեց Կորեայում ամերիկյան ագրեսիային, այլև Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային ագրեսոր հայտարարեց։ Ընկեր Ստալինը, նշելով, որ ՄԱԿ-ի այդ որոշումը խայտառակ որոշում է, ասաց. «Իրոք, հարկավոր է կորցնել խղճի վերջին մնացորդները՝ պնդելու համար, որ Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք զավթել են չինական տերիտորիա՝ Տայվան կղզին, և ներխուժել են Կորեա՝ դեպի Չինաստանի սահմանները,—հանդիսանում են պաշտպանվող կողմ, իսկ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, որը պաշտպանում է իր սահմանները և ջանում է իրեն վերադարձնել ամերիկացիների զավթած Տայվան կղզին,—հանդիսանում է ագրեսոր»։

Ինչպես նշում է ընկեր Ստալինը, այդ ասում է այն մասին, որ «Միավորված Ազգե-

րի Կազմակերպությունը, որը ստեղծվել է որպես խաղաղության պահպանման պատվար, վերածվում է պատերազմի գործիքի, նոր համաշխարհային պատերազմի հրահրման միջոցի»։ Այդ տեղի ունեցավ այն բանի հետևանքով, որ ՄԱԿ-ում այժմ տիրություն է անում իմպերիալիստական պետությունների բլոկը, որն ունի ձայների մեծամասնություն։

Պետք է նշել, որ Անգլիայի, Ֆրանսիայի, Բելգիայի, Հոլանդիայի և Հյուսիս-Ատլանտյան պակտին մասնակցող մյուս երկրների կառավարող շրջանները արդեն վաղուց դարձել են ամերիկյան իմպերիալիստների վասալները, օգնելով նրանց անցկացնելու իրենց ռեակցիոն ագրեսիվ քաղաքականությունը։ Ինչ վերաբերում է Լատինական Ամերիկայի երկրներին, ապա այդ երկրներում համարյա անարգել կերպով տեր ու տնօրինություն է անում ամերիկյան մոնոպոլիստական կապիտալը, որը փաստորեն այդ երկրները դարձրել է իր գաղութը։ Լատինաամերիկյան երկրների կառավարող շրջանները դարձրել են ամերիկյան իմպերիալիզմի գործակալությունները։ Լատինա-ամերիկյան երկրների այդ կախվածությունը ամերիկյան իմպերիալիզմից, հասցրել է այն բանին, որ



«Լատինա-ամերիկյան քսան երկրների 20 ներկայացուցիչներն այժմ ներկայացնում են Ամերիկայի Միացյալ Նահանգների առավել համախմբված և հլու-հնազանդ բանակը ՄԱԿ-ում»։

Այսպիսով, Լատինա-ամերիկյան քսան պետությունները, որոնք կազմում են ՄԱԿ-ի բոլոր անդամների թվի մեկերրորդը, հանդիսանում են կարևոր օղակն այն տխրահռչակ «քվեարկության մեքենայի», որը ՄԱԿ-ում հլու-հնազանդ հաստատում է ամերիկյան իմպերիալիստների բոլոր առաջարկները։ Ամերիկացիների բռնությունների արտահայտվում են ՄԱԿ-ի բոլոր օրգաններում։ Այսպիսով, ինչպես ասում է ընկեր Ստալինը, «ՄԱԿ-ն այժմ հանդիսանում է ոչ այնքան համաշխարհային կազմակերպություն, որքան կազմակերպություն ամերիկացիների համար, որը գործում է հօգուտ ամերիկյան ագրեսորների»։

Այս ամենը հասցրեց այն բանին, որ ներկա պայմաններում Միավորված Ազգերի Կազմակերպությունը չի կարող ծառայել որպես խաղաղության պահպանման պատվար, որովհետև նրանում տեր ու տնօրեն է հանդիսանում Ամերիկայի և մարշալականացված Արևմտյան Եվրոպայի կապի-

տալիստական պետությունների բլոկը, որը ծառայում է Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիստներին։ Այս պայմաններում, երբ ՄԱԿ-ը դառնում է գործիք ամերիկյան իմպերիալիստների ձեռքին, «Խաղաղությունը կպահպանվի և կամրապնդվի,— ասում է ընկեր Ստալինը,— եթե ժողովուրդները խաղաղության պահպանման գործը վերցնեն իրենց ձեռքը և այն պաշտպանեն մինչև վերջ»։

Աշխատավորների մեծ առաջնորդի այս իմաստուն խոսքերը բոլոր երկրներում միլիոնավոր մարդկանց ոգեշնչեցին էլ ավելի ուժեղացնելու պայքարը հանուն խաղաղության ու դեմոկրատիայի, ընդդեմ ամերիկյան իմպերիալիստների և նրանց կամակատարների ագրեսիվ քաղաքականության։ Բոլոր երկրներում աշխատավորները ակտիվ պայքար են ծավալում ռեակցիայի հարձակման դեմ։ Ֆրանսիայում, Իտալիայում և հենց Ամերիկայի Միացյալ Նահանգներում, ինչպես և մյուս երկրներում, չնայած իշխանությունների ռեպրեսիաներին, տեղի են ունենում իմպերիալիստական ռեակցիայի և նոր ագրեսիվ պատերազմի հրահրման քաղաքականության դեմ ուղղված բազմաթիվ գործադուլներ։ Այս տարվա մարտի վերջերին



Բեռլինում տեղի ունեցած բանվորների եվրո-
պական կոնֆերանսը ցույց տվեց եվրոպա-
կան երկրների բանվոր դասակարգի հաս-
տատ վճռականությունը՝ պայքարելու Գեր-
մանիայի վերառազմականացման ամերիկ-
յան պլանների դեմ, որոնք լուրջ վտանգ են
հանդիսանում Եվրոպայի ժողովուրդների
անվտանգության համար։
Իրենց գործունեությունն ակտիվացրել են
նաև աշխատավորների մասսայական կազ-
մակերպությունները, ինչպես, օրինակ, պր-
ոֆմիությունների Համաշխարհային ֆեդե-
րացիան, որը միավորում է տասնյակ մի-
լիոնավոր մարդիկ, կանանց Միջազգային
ֆեդերացիան, որն իր շարքերում ընդգրկում
է 90 միլիոն մարդ, դեմոկրատական երիտա-
սարդության Միությունը, որն իր շարքերում
ունի 70 միլիոն մարդ։ Աշխատավորների
իրավունքների համար, խաղաղության հա-
մար մարտնչողների առաջին շարքերում
հանդես են գալիս կոմունիստական պար-
տիաները։ Հսկայական չափով աճել է կո-
մունիստական պարտիաների հեղինակու-
թյունը, նրանց դերը զանազան երկրների
քաղաքական կյանքում։ Եթե, օրինակ, Ֆրան-
սիայում պատերազմից առաջ կոմունիստա-
կան պարտիան ուներ 300 հազար անդամ,

ապա այժմ ունի ավելի քան մեկ միլիոն անդամ։ Իտալիայում պատերազմից առաջ կոմունիստական պարտիան կազմում էր մի փոքր խումբ, որն աշխատում էր խոր ընդհատակում։ 1945 թվականին Իտալիայի կոմունիստական պարտիան իր շարքերում ուներ արդեն ավելի քան մեկ միլիոն յոթ հարյուր տասնյոթ հազար անդամ, իսկ ներկայումս՝ ավելի քան երկու միլիոն հինգ հարյուր յոթանասուն վեց հազար անդամ։ Այս ամենը վկայում է, որ կոմունիստներն իրենց ցույց են տվել որպես աշխատավորների շահերի համար կայուն և հետևողական մարտնչողներ, ամենուրեք աճում է ժողովրդական մասսաների վստահությունը կոմունիստների հանդեպ։

Ընկեր Ստալինը մատնանշեց, որ ներկայումս, երբ ամերիկյան իմպերիալիստները ձգտում են նոր համաշխարհային պատերազմ սկսել, «խաղաղության պահպանման համար լայն կամպանիան, որպես պատերազմի հրձիգների հանցավոր մեքենայությունների մերկացման միջոց, այժմ առաջնակարգ նշանակություն ունի»։

Ամբողջ աշխարհի հասարակ մարդիկ այժմ ավելի ու ավելի են գիտակցում, որ խաղաղության գործն իրենց սեփական ձեռ-



քում է գտնվում։ Օրեցօր ավելի ու ավելի ամրապնդվում են խաղաղության ու դեմոկրատիայի լագերը։ 1951 թվականի փետրվարի վերջերին Բեռլինում տեղի ունեցավ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի սեսիան, որն արտահայտելով ամբողջ պրոգրեսիվ մարդկության կամքը, ընդունեց մի դիմում, պահանջելով խաղաղության պակտ կնքել հինգ մեծ տերությունների՝ Ամերիկայի Միացյալ Նահանգների, Սովետական Միության, Մեծ Բրիտանիայի, Ֆրանսիայի և Չինաստանի միջև։ Շատ երկրներում այդ Դիմումի տակ ստորագրությունների հավաքումը վերածվում է ժողովրդական մասսաների հզոր ցույցի, որոնք հաստատակամորեն վճռել են կանխել իմպերիալիստների կողմից դյութվող արյունալի նոր պատերազմը։

Խաղաղության և դեմոկրատիայի լագերի գլուխ է կանգնած Սովետական Միությունը՝ սոցիալիստական մեծ տերությունը, որն իր ամբողջ հզորությամբ պաշտպանում է խաղաղությունն ամբողջ աշխարհում։ Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականության վառ արտահայտություն է հանդիսանում 1951 թվականի մարտի 12-ին

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած Օրենքը խաղաղության պաշտպանության մասին, որը դատապարտում է պատերազմի պրոպագանդան, որպես ամենածանր հանցագործություն։

Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականության մասին վերստին վկայող մի նշանակալից իրադարձություն է հանդիսանում 1951 թվականի ապրիլի 6-ին խաղաղության համար աչքի ընկնող մարտնչողներին «Ժողովուրդների միջև խաղաղությունն ամրապնդելու համար» միջազգային ստալինյան այն մրցանակների շնորհումը, որոնք հիմնվել են ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1949 թվականի դեկտեմբերի 20-ի Հրամանագրով՝ ընկեր Ստալինի ծննդյան յոթանասունամյակի կապակցությամբ։

Ստալինյան միջազգային մրցանակներով պարգևատրվածների թվումն են՝ ականավոր գիտնական Ֆրեդերիկ Ժոլիո-Կյուրին, չինական կին հասարակական գործիչ Սուն-Ցզին-լինը, հերոսական կորեական ժողովրդի ներկայացուցիչ Պակ Դեն Այը, խաղաղության համար ակտիվ մարտնչող Կենտրբերի տաճարի վանահայր՝ Հյուլետ Ջոնսոնը,



ֆրանսիական կին հասարակական գործիչ Էժենի Կոտտոնը և ուրիշները։

Ընկեր Ստալինը հայտարարեց, որ Սովետական Միությունը «շարունակելու է և անսասանորեն կվարի պատերազմը կանխելու և խաղաղությունը պահպանելու քաղաքականությունն»։

Պրոգրեսիվ մարդկության իմաստուն առաջնորդի այս խոսքերը վստահություն են ներշնչում խաղաղության համար մարտնչողներին, որոնք իրենց հայացքը հառում են դեպի Սովետական տերությունը, որպես ընդհանուր խաղաղության հզոր ու հուսալի պատվարի։ Բոլոր երկրների ժողովուրդները համոզված են, որ խաղաղության գործը հաղթանակ կտանի պատերազմի մութ ուժերի դեմ, որովհետև խաղաղության շարժումը գլխավորում է խաղաղասեր մեծ տերությունը՝ Սովետական Միությունը, որին առաջնորդում է խաղաղության և ամբողջ մարդկության երջանկության համար ամենամեծ մարտնչող Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը։

—O—

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

